Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 1

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ԹԵՐԹԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
1944

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 1



«Սովետական Հայաստան» թերթի
հրատարակչություն
1944

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



# ՀՐԱՄԱՆ

## ԳԵՐԱԳՈՒՅՆ ԳԼԽԱՎՈՐ ՀՐԱՄԱՆԱՏԱՐԻ

23 փետրվարի 1944 թ. № 16 ք. Մոսկվա

Ընկեր կարմիրբանակայիննե՛ր և կարմիրնավատորմայիննե՛ր, սերժանտնե՛ր, ըսպաննե՛ր ու գեներալնե՛ր, պարտիզաննե՛ր ու պարտիզանուհինե՛ր:

Կարմիր Բանակի 26-րդ տարեդարձը մեր երկրի ժողովուրդները դիմավորում են գերմանա-ֆաշիստական զորքերի դեմ սովետական զորքերի տարած պատմական հաղթանակների իրադրության մեջ:

Ավելի քան մեկ տարի Կարմիր Բանակը հաղթական հարձակում է գործում, ջախջախելով հիտլերյան զավթիչների բանակները և դուրս շպրտելով նրանց սովետական հողից: Այդ ժամանակամիջոցում Կարմիր Բանակը հաջողությամբ կատարեց 1942—43 թ. թ. ձմեռային կամպանիան, շահեց 1943 թվի ամառային ճակատամարտը և ծավալեց 1943—44 թ. թ. ձմեռային հաղթական հարձակումը:

Պատերազմների պատմության մեջ այդ անօրինակ կամպանիաներում Կարմիր Բանակը մարտերով արեւմուտք անցավ տեղ-տեղ մինչև 1700 կիլոմետր, թշնամուց մաքրեց նրա զավթած սովետական հողի գրեթե 3/4-ը:

Ներկա ձմեռային կամպանիայի ընթացքում Կարմիր Բանակը լիկվիդացրեց գերմանացիների հզոր պաշտպանությունը Դնեպրի ամբողջ երկարությամբ՝ Ժլոբինից մինչև Խերսոն, և դրանով իսկ տապալեց սովետա-գերմանական ռազմաճակատում հաջողությամբ պաշտպանողական երկարաձիգ պատերազմ մղելու գերմանացիների ունեցած հաշիվները:

Ձմեռային կամպանիայի երեք ամսվա ընթացքում մեր քաջարի զորքերը խոշորագույն հաղթանակներ տարան աջափնյա Ուկրաինայում, ավարտեցին Կիևի, Դնեպրոպետրովսկի, Զապորոժյեի մարզերի ազատագրումը, ազատագրեցին Ժիտոմիրի ամբողջ մարզը, համարյա ամբողջությամբ Ռովնոյի և Կիրովոգրադի մարզերը, Վիննիցայի, Նիկոլայեվի, Կամենեց—Պոդոլսկի և Վոլինի մարզերի մի շարք շրջանները: Կարմիր Բանակի վճռական գործողություններով լիկվիդացվեցին գերմանական հակահարձակման փորձերը Ժիտոմիրի, Կրիվոյ Ռոգի և Ումանի շրջաններում: Սովետական



զորքերը Դնեպրի աջ ափին նոր Ստալինգրադ սարքեցին գերմանացիների համար, Կորսուն-Շևչենկովսկիի շրջանում շրջապատելով ու ոչնչացնելով գերմանական 10 դիվիզիա և մեկ բրիգադա:

Սովետական զորքերը մեծ հաղթանակ տարան Լենինգրադի մոտ: Մեր զորքերը խորտակեցին հակառակորդի երկարատև, խոր էշելոնացված ամրությունների հզոր սիստեմը, ջախջախեցին գերմանական զորքերի ուժեղ խումբը, Լենինգրադը ամբողջովին ազատագրեցին թշնամու բլոկադայից և հրետանային բարբարոսական ռմբակոծություններից: Սովետական մարտիկները ավարտում են Լենինգրադի և Կալինինի մարզերի մաքրումը ֆաշիստական ճիվաղներից ու մտել են Սովետական Էստոնիայի հողը:

Ծավալվել է օկուպանտների մասսայական վռնդումը սովետական Բելոռուսիայից, գրեթե ամբողջովին ազատագրված են Գոմելի և Պոլեսյեի մարզերը, Մոգիլյովի և Վիտեբսկի մարզերի մի շարք շրջաններ:

Այս ձմռան անբարենպաստ պայմաններում մեր զորքերը, հաղթահարելով թշնամու պաշտպանողական հզոր գոտիները, ձմեռային կամպանիայի 3 ամսվա ընթացքում զավթիչներից մաքրեցին սովետական հողի մոտ 200.000 քառակուսի կիլոմետր:

Կարմիր Բանակը թշնամուց ետ գրավեց ավելի քան 13.000 բնակավայր, այդ թվում 82 քաղաք և 320 երկաթուղային կայարան: Ֆաշիստական գերությունից ազատագրվեցին սովետական նորանոր միլիոնավոր քաղաքացիներ: Մեր հայրենիքին վերադարձվեցին կարևոր գյուղատնտեսական և արդյունաբերական շրջաններ՝ երկաթահանքի և մարգանեցի ամենահարուստ պաշարներով: Գերմանացիները զրկվեցին այդ տնտեսապես կարևոր շրջաններից, որոնց նրանք այնպես կատաղորեն կառչում էին:

Այժմ արդեն բոլորին պետք է պարզ լինի, որ հիտլերյան Գերմանիան անկանգ շարժվում է դեպի կատաստրոֆ: Ճիշտ է, այս պատերազմում պատերազմ մղելու պայմանները Գերմանիայի համար ավելի բարենպաստ են, քան անցյալ համաշխարհային պատերազմի ժամանակ, երբ նա պատերազմի հենց սկզբից մինչև վերջը պայքար էր մղում երկու ճակատում: Սակայն Գերմանիայի համար մեծ մինուս է այն փաստը, որ Սովետական Միությունը այս պատերազմում շատ ավելի ուժեղ դուրս եկավ, քան հին ցարական Ռուսաստանը անցյալ պատերազմում: Առաջին համաշխարհային պատերազմում գերմանական բլոկի դեմ երկու ճակատներում կռվում էին վեց մեծ տերություններ՝ Ֆրանսիան, Ռուսաս-



տանը, Անգլիան, ԱՄՆ-ը, Ճապոնիան և Իտալիան: Այս պատերազմում Գերմանիայի կողմն անցան Իտալիան և Ճապոնիան, ֆաշիստական բլոկին միացավ Ֆինլանդիան, նրա կողմը անցավ Ռումինիան, որն անցյալ պատերազմում կռվում էր Գերմանիայի դեմ, բայց որում Գերմանիայի հիմնական ուժերը մինչև այժմ գործում են մեկ ճակատում՝ Սովետական Միության դեմ: Պատմությունից հայտնի է, որ Գերմանիան միշտ շահել է պատերազմները, եթե նա կռվել է մեկ ճակատում և ընդհակառակը տանուլ է տվել պատերազմը, եթե նա հարկադրված է եղել կռվելու երկու ճակատում: Ներկայիս պատերազմում Գերմանիան հիմնական ուժերով կռվելով մեկ ճակատում ՍՍՌՄ-ի դեմ, այնուամենայնիվ, ոչ միայն չկարողացավ հաղթանակ տանել, այլև Սովետական Միության զինված ուժերի հուժկու հարվածներով կատաստրոֆի եզրին կանգնեցվեց: Եթե Սովետական Միությունը մենակ դեմ առ դեմ ո՛չ միայն դիմացավ գերմանական ռազմական մեքենայի գրոհին, այլև վճռական պարտություններ պատճառեց գերմանա-ֆաշիստական զորքերին, ապա հիտլերյան Գերմանիայի դրությունը կլինի առավել ևս անհուսալի, երբ գործողության մեջ մտնեն մեր դաշնակիցների գլխավոր ուժերը և

հիտլերյան Գերմանիայի դեմ ծավալված դաշնակից բոլոր պետությունների բանակների հզոր ու հարվածուն հարձակումը:

Գերմանա-ֆաշիստական ավազակները այժմ դես ու դեն են նետվում փրկության ուղիներ որոնելով կատաստրոֆից: Նրանք նորից կառչել են թիկունքում «տոտալ» մոբիլիզացիայից, թեև Գերմանիայի մարդկային ռեսուրսները սպառված են: Ֆաշիստական պարագլուխները հակահիտլերյան կոալիցիայի բանակում տարաձայնություն մտցնելու և դրանով իսկ պատերազմը երկարաձգելու հուսահատական փորձերի են ձեռնարկում: Հիտլերյան դիվանագետները մեկ չեզոք երկրից նետվում են մյուսը, ձգտում են կապեր հաստատել պրոհիտլերյան տարրերի հետ, ակնարկելով սեպարատ հաշտության հնարավորությունը մերթ մեր պետության, մերթ մեր դաշնակիցների հետ: Հիտլերականների այդ բոլոր մեքենայությունները դատապարտված են ձախողման, որովհետև հակահիտլերյան կոալիցիայի հիմքն են կազմում կենսականորեն կարևոր շահերը դաշնակիցների, որոնք դրել են հիտլերյան Գերմանիային և նրա եվրոպական համագործակիցներին ջախջախելու խնդիրը: Արմատական շահերի հենց այդ ընդհանրությունն է տանում դեպի



ՍՍՌՄ-ի, Անգլիայի ու ԱՄՆ-ի մարտական դաշինքի ամրապնդումը պատերազմի ժամանակ:

Մոտենում է վերջնական հատուցման ժամը այն բոլոր ոճրագործությունների համար, որ հիտլերականները կատարել են սովետական հողում և Եվրոպայի օկուպացված երկրներում:

Կարմիր Բանակի հաղթական հարձակումը հնարավոր դարձավ շնորհիվ սովետական մարդկանց աշխատանքային նորանոր սխրագործությունների մեր ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում: Սովետական Միության աշխատավորները ռազմաճակատներում Կարմիր Բանակի ամառային հաղթանակներն ամրապնդեցին թիկունքի արտադրական նորանոր հաղթանակներով:

Մեր արդյունաբերության բանվորները ժամկետից շուտ կատարում և գերակատարում են պետության սահմանած պլանները, գործարկում են նորանոր գործարաններ, դոմնային հնոցներ և էլեկտրոկայաններ, ազատագրված շրջաններում չտեսնված կարճ ժամկետներում վերականգնում են օկուպանտների ավերած ինդուստրիան: Բանվոր դասակարգի հերոսական ջանքերը է՛լ ավելի են ամրապնդում Կարմիր Բանակի ռազմա-նյութական բազան և դրանով իսկ մոտեցնում են մեր վերջնական հաղթանակի ժամը:

Սովետական գյուղացիությունը պետությանը տալիս է պարենամթերք բանակի և քաղաքների համար, հումք՝ արդյունաբերության համար, անձնվեր օգնություն է ցույց տալիս Կարմիր Բանակին:

Սովետական ինտելիգենցիան բանվորներին և գյուղացիներին ուղղակի ղեկավար օգնություն է ցույց տալիս արտադրությունը ծավալելու և Կարմիր Բանակի կարիքները բավարարելու գործում:

Ազատագրված շրջանների աշխատավորները օրեց-օր ընդարձակում են Կարմիր Բանակին՝ իրենց ազատարարին ցույց տըվող օգնությունը, ռազմաճակատ գնացող բեռների ընդհանուր հոսանքին միացնելով վերականգնվող գործարանների և գյուղատնտեսության արտադրանքը:

Անտարակույս է, որ սովետական ժողովուրդը այսուհետև էլ իր հերոսական աշխատանքով և իր բոլոր ջանքերի լարումով կապահովի երկրի արտադրողական ուժերի անընդհատ աճը՝ գերմանա-ֆաշիստական զավթիչների արագ և վերջնական ջախջախման համար:

Միութենական ռեսպուբլիկաներում նոր զորային կազմավորումների ստեղծումը, որ նախապատրաստված է ՍՍՌՄ ժողովուրդների մարտական համագործակցությամբ՝ Հայրենական պատերազմի մեջ և մեր պե-



տության ամբողջ պատմությամբ, էլ ավելի կամրապնդի Կարմիր Բանակը և նրա շարքերի մեջ կմտցնի մարտական նորանոր ուժեր:

Ընկեր կարմիրբանակայիննե՛ր, կարմիրնավատորմայիննե՛ր, սերժանտնե՛ր, սպանե՛ր և գեներալնե՛ր: Ընկեր պարտիզաննե՛ր և պարտիզանուհինե՛ր.

Մեր Հայրենիքի ազատության և անկախության համար մղվող ազատագրական մեծ պատերազմում դուք հերոսության հրաշքներ գործեցիք: Կարմիր Բանակը վճռական շրջադարձ առաջ բերեց պատերազմի մեջ մեր օգտին և այժմ հաստատ գնում է դեպի վերջնական հաղթանակ ընդդեմ թշնամու: Թշնամին կրում է պարտություն պարտության ետևից: Սակայն նա դեռևս չի ջախջախված: Հիտլերյան ավազակները տեսնելով իրենց կործանման մոտենալը և մեր հողում իրենց կատարած բոլոր հրեշավոր ոճրագործությունների համար հատուցման անխուսափելիությունը, դիմադրում են դատապարտվածի կատաղությամբ: Նրանք մարտի են նետում վերջին ուժերն ու ռեզերվները, կառչում են սովետական հողի յուրաքանչյուր մետրին, յուրաքանչյուր նպաստավոր բնագծին:

Հենց դրա համար, որքան էլ մեծ են մեր հաջողությունները, մենք առաջվա նման

պետք է լրջմտորեն գնահատենք թշնամու ուժերը, լինենք զգաստ, թույլ չտանք մեր շարքերում պարծենկոտություն, ինքնահանգստացում, անհոգություն: Պատերազմների պատմության մեջ դեռևս դեպք չի եղել, որ թշնամին ինքը ցատկի անդունդը: Պատերազմը շահելու համար պետք է հակառակորդին մոտեցնել անդունդի եզրին և հրել նրան այնտեղ: Միայն իրենց ուժով անշեղորեն հարաճուն խորտակիչ հարվածները կարող են կոտրել թշնամու դիմադրությունը և մեզ հասցնել վերջնական հաղթանակի: Դրա համար անհրաժեշտ է շարունակել կատարելագործել մեր բանակի մարտիկների մարտական ուսուցումը և հրամանատարների ռազմական հմտությունը: Կարմիր Բանակի պարտքն է՝ յուրաքանչյուր օր բարձրացնել իր ռազմական արվեստը, անդուլ կերպով և ուշադիր ուսումնասիրել թշնամու տակտիկան, հմտորեն և ժամանակին դուշակել նրա նենգ մեքենայությունները, թշնամու տակտիկային հակադրել մեր ավելի կատարյալ տակտիկան: Անհրաժեշտ է, որ Կարմիր Բանակի առաջավոր զորամասերի և միավորումների մարտական փորձն ու նվաճումները դառնան մեր բոլոր զորքերի սեփականությունը, որպեսզի ամբողջ Կարմիր Բանակը, նրա բոլոր մարտիկներն ու պետերը սովորեն



թշնամուն խփել ժամանակակից ռազմական գիտության բոլոր կանոններով:

Ընկե՛ր կարմիրբանակայիննե՛ր և կարմիրնավատորմայիննե՛ր, սերժանտնե՛ր, պետնե՛ր ու գեներալնե՛ր, պարտիզաննե՛ր ու պարտիզանուհիներ.

Ողջունելով և շնորհավորելով ձեզ Կարմիր Բանակի 26-րդ տարեդարձի առթիվ, հրամայում եմ.

1. Ամբողջ շարքային ու սերժանտական կազմին՝ հետևակայիններին, ականանետորդներին, հրետանավորներին, օդաչուներին, տանկիստներին, սակրավորներին, կապավորներին, հեծելազորայիններին՝ շարունակել անդուլ կերպով կատարելագործել իրենց մարտական վարպետությունը, լիովին օգտագործել մեր սքանչելի մարտական տեխնիկան, խփել թշնամուն այնպես, ինչպես նրան խփում են մեր պանծալի գվարդիականները, ճշգրիտ կատարել հրամանատարների հրամանները, ամրապնդել կարգապահությունը և կարգը, բարձրացնել կազմակերպվածությունը:

2. Զորքի բոլոր տեսակների պետերին և գեներալներին՝ կատարելագործել զորավարության արվեստը, մանրելու տակտիկան, զորքի բոլոր տեսակների փոխգործողության գործը մարտի ընթացքում, ավելի համարձակ ու ավելի լայն կերպով մար-

տական պրակտիկայի մեջ արմատավորել գվարդիական առաջավոր զորամասերի ու միավորումների փորձը, ամենաբարձր աստիճանի հասցնել շտաբների և զորային թիկունքի աշխատանքի կուլտուրան, ամեն կերպ բարելավել ու զարգացնել մեր հետախուզությունը:

3. Ամբողջ Կարմիր Բանակին՝ կրակի և մանևրի հմուտ զուգակցությամբ խորտակել թշնամու պաշտպանությունը նրա ամբողջ խորությամբ, դադար չտալ թշնամուն, ժամանակին լիկվիդացնել թշնամու փորձերը՝ հակագրոհներով կասեցնելու մեր հարձակումը, հմտորեն կազմակերպել թշնամու հետապնդումը, թույլ չտալ, որ նա տանի տեխնիկան, համարձակ մանևրով շրջանցել թշնամու զորքերի թևերը, ներխուժել նրանց թիկունքը, շրջապատել հակառակորդի զորքերին, մասնատել նրանց ու ոչնչացնել, եթե նրանք հրաժարվում են զենքը ցած դնելուց:

4. Պարտիզաններին ու պարտիզանուհիներին՝ ուժեղացնել Կարմիր Բանակին ցույց տրվող օգնությունը, հարձակվել հակառակորդի շտաբների և կայազորների վրա, ջախջախել նրա թիկունքը, քար ու քանդ անել նրա կոմունիկացիաներն ու կապը, զրկել նրան ռեզերվներ մոտ բերելու հնարավորությունից:



5. Ի նշանավորումն անցած տարվա ընթացքում Սովետական պետության զինված ուժերի ձեռք բերած մեծ հաղթանակների, այսօր, փետրվարի 23-ին, Կարմիր Բանակի 26-րդ տարեդարձի օրը, ժամը 18-ին Մոսկվայում, Լենինգրադում, Կիևում, Դնեպրոպետրովսկում, Գոմելում, Ռոստովում ողջունել Կարմիր Բանակի քաջարի զորքերին հրետանային քսան համազարկով:

Փա՛ռք մեր հաղթական Կարմիր Բանակին:

Փա՛ռք սովետական զենքին:

Փա՛ռք մեր խիզախ պարտիզաններին ու պարտիզանուհիներին:

Կեցցե՛ մեր մեծ Սովետական Հայրենիքը:

Կեցցե՛ մեր Համամիութենական Կոմունիստական պարտիան՝ Կարմիր Բանակի մեծ հաղթանակների ոգեշնչողն ու կազմակերպիչը:

Մա՛հ գերմանական զավթիչներին:

ԳԵՐԱԳՈՒՅՆ ԳԼԽԱՎՈՐ ՀՐԱՄԱՆԱՏԱՐ,
ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ՄԱՐՇԱԼ
**Ի. ՍՏԱԼԻՆ**

## ՍՍՌՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ԸՆԴՈՒՆԱԾ ՕՐԵՆՔՆԵՐԸ

# ՕՐԵՆՔ

### ՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆԵՐԻ ԶՈՐԱՅԻՆ ԿԱԶՄԱՎՈՐՈՒՄՆԵՐ ՍՏԵՂԾԵԼՈՒ ԵՎ ԱՅԴ ԿԱՊԱԿՑՈՒԹՅԱՄԲ ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԿՈՄԻՍԱՐԻԱՏԸ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՄԻՈՒԹԵՆԱԿԱՆԻՑ ՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ-ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԿՈՄԻՍԱՐԻԱՏԻ ՎԵՐԱԿԱԶՄԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության պաշտպանական հզորությունը ուժեղացնելու նպատակով Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Գերագույն Սովետը որոշում է.

1. Սահմանել, որ միութենական ռեսպուբլիկաները կազմակերպում են ռեսպուբլիկաների զորային կազմավորումներ:

2. ՍՍՌՄ Կոնստիտուցիայի մեջ մտցնել հետևյալ լրացումները.

ա) ՍՍՌՄ Կոնստիտուցիայի 14-րդ հոդվածի «ը» կետը «ՍՍՌՄ-ի պաշտպանու-



թյան կազմակերպումը և ՍՍՌՄ-ի բոլոր զինված ուժերի ղեկավարումը» բառերից հետո լրացնել՝ «Միութենական ռեսպուբլիկաների զորային կազմավորումների կազմակերպման ղեկավարող հիմունքների սահմանումը» բառերով, այդ կետը շարադրելով հետևյալ կերպ.

«ը») ՍՍՌՄ-ի պաշտպանության կազմակերպումը և ՍՍՌՄ-ի բոլոր զինված ուժերի ղեկավարումը, միութենական ռեսպուբլիկաների զորային կազմավորումների կազմակերպման ղեկավարող հիմունքների սահմանումը».

բ) ՍՍՌՄ Կոնստիտուցիան լրացնել 18-բ հոդվածով հետևյալ բովանդակությամբ.

«Հոդված 18-բ. Յուրաքանչյուր միութենական ռեսպուբլիկա ունի իր ռեսպուբլիկական զորային կազմավորումները».

գ) ՍՍՌՄ Կոնստիտուցիայի 60-րդ հոդվածը լրացնել «գ» կետով հետևյալ բովանդակությամբ.

«գ») Սահմանում է ռեսպուբլիկական զորային կազմավորումների կազմակերպման կարգը»:

3. Պաշտպանության ժողովրդական կոմիսարիատը ընդհանուր միութենականից վերակազմել միութենական-ռեսպուբլիկական ժողովրդական կոմիսարիատի։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Նախագահ՝ Մ. ԿԱԼԻՆԻՆ
ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության քարտուղար՝ Ա. ԳՈՐԿԻՆ

*Մոսկվա, Կրեմլ, 1 փետրվարի 1944 թ.*

# ՕՐԵՆՔ

## ԱՐՏԱՔԻՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ ՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆԵՐԻՆ ԼԻԱԶՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ ՎԵՐԱՊԱՀԵԼՈՒ ԵՎ ԱՅԴ ԿԱՊԱԿՑՈՒԹՅԱՄԲ ԱՐՏԱՔԻՆ ԳՈՐԾԵՐԻ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԿՈՄԻՍԱՐԻԱՏԸ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՄԻՈՒԹԵՆԱԿԱՆԻՑ ՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ-ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԿՈՄԻՍԱՐԻԱՏԻ ՎԵՐԱԿԱԶՄԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Միջազգային կապերը ընդլայնելու և այդ պետությունների հետ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության համագործակցությունը ամրապնդելու նպատակով և հաշվի առնելով օտարերկրյա պետությունների հետ անմիջական հարաբերություններ հաստատելու գործում միութենական ռեսպուբլիկաների աճած պա-



հանջը, Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Գերագույն Սովետը որոշում է.

1. Սահմանել, որ միութենական ռեսպուբլիկաները կարող են անմիջական հարաբերությունների մեջ մտնել օտարերկրյա պետությունների հետ և նրանց հետ համաձայնագրեր կնքել։

2. ՍՍՌՄ Կոնստիտուցիայի մեջ մտցնել հետևյալ լրացումները.

ա) ՍՍՌՄ Կոնստիտուցիայի 14-րդ հոդվածի «ա» կետը «Միությունը միջազգային հարաբերություններում ներկայացնելը, պայմանագրեր կնքելն ու նրանց ռատիֆիկացիան» բառերից հետո լրացնել «օտարերկրյա պետությունների հետ միութենական ռեսպուբլիկաների փոխհարաբերությունների մեջ ընդհանուր կարգ սահմանելը» բառերով, այդ կետը շարադրելով հետևյալ կերպ.

«ա) Միությունը միջազգային հարաբերություններում ներկայացնելը, այլ պետությունների հետ պայմանագրեր կնքելն ու նրանց ռատիֆիկացիան, օտարերկրյա պետությունների հետ միութենական ռեսպուբլիկաների փոխհարաբերությունների մեջ ընդհանուր կարգը սահմանելը»:

բ) ՍՍՌՄ Կոնստիտուցիան լրացնել 18-ա հոդվածով հետևյալ բովանդակությամբ.

«Հոդված 18-ա. Յուրաքանչյուր միութենական ռեսպուբլիկա իրավունք ունի անմիջական հարաբերությունների մեջ մտնել օտարերկրյա պետությունների հետ, նրանց հետ կնքել համաձայնագրեր և փոխանակել դիպլոմատիական և հյուպատոսական ներկայացուցիչներ»:

գ) ՍՍՌՄ Կոնստիտուցիայի 60-րդ հոդվածը լրացնել «ե» կետով հետևյալ բովանդակությամբ.

«ե) սահմանում է միութենական ռեսպուբլիկայի ներկայացնելը միջազգային հարաբերություններում»:

3. Արտաքին Գործերի Ժողովրդական Կոմիսարիատը ընդհանուր միութենականից վերակազմել միութենական-ռեսպուբլիկական Ժողովրդական Կոմիսարիատի:

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Նախագահ՝ Մ. ԿԱԼԻՆԻՆ

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Քարտուղար՝ Ա. ԳՈՐԿԻՆ

Մոսկվա, Կրեմլ, 1 փետրվարի 1944 թ.



# ՕՐԵՆՔ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆԵՐԻ ՄԻՈՒԹՅԱՆ 1944 ԹՎԻ ՊԵՏԱԿԱՆ ԲՅՈՒՋԵԻ ՄԱՍԻՆ

Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Գերագույն Սովետը որոշում է.

1. Հաստատել ՍՍՌՄ Ժողովրդական Կոմիսարների Սովետի ներկայացրած ՍՍՌՄ-ի 1944 թվի պետական բյուջեն՝ Միության Սովետի և Ազգությունների Սովետի Բյուջետային Հանձնաժողովների զեկուցումների առթիվ ընդունված փոփոխություններով, այսինքն եկամուտների գծով ընդամենը 249.575.982 հազար ռուբլի և ծախսերի գծով 249.575.982 հազար ռուբլի:

2. Համապատասխան սույն օրենքի առաջին հոդվածի հաստատել Միութենական Բյուջեի եկամուտներն ու ծախսերը եկամուտների գծով 214.746.836 հազար ռուբլու գումարով և ծախսերի գծով 214.746.836 հազար ռուբլի գումարով:

3. Հաստատել Միութենական Ռեսպուբ-

| | Եկամուտների գծով (հազ. ռ.) | Ծախսերի գծով (հազ. ռ.) |
|---|---|---|
| Որից՝ ռեսպուբլիկական բյուջե | 372·961 | 208·989 |
| տեղական բյուջեներ | 114·666 | 283·638 |
| Կարելո-Ֆիննական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկա | 123·567 | 123·567 |
| Որից՝ ռեսպուբլիկական բյուջե | 112·033 | 87·988 |
| տեղական բյուջեներ | 11·534· | 35·579 |
| Միութենական Ռեսպուբլիկաների Պետական բյուջեների գծով ԸՆԴԱՄԵՆԸ | 36·175·146· | 36·175·146 |
| Որից՝ ռեսպուբլիկական բյուջեներ | 22·159·801 | 11·104·403 |
| տեղական բյուջեներ | 14·015·345 | 25·070·743 |

4. Հաստատել ռեսպուբլիկական բյուջեների հատկացումները ԱՍՍՌ-ների և տեղական սովետների բյուջեներին հետևյալ գումարներով.

(հազար ռուբ.)

| | |
|---|---|
| Ռուսաստանի Սովետական Ֆեդերատիվ Սոցիալիստական Ռեսպուբլիկա | 6·770·486 |
| Ուկրաինական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկա | 1·501·492 |
| Բելոռուսական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկա | 223·427 |
| Ադրբեջանական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկա | 361·068 |



(հազ. ռ.)

| | |
|---|---|
| Վրացական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկա | 402·708 |
| Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկա | 191·006 |
| Թուրքմենական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկա | 154·878 |
| Ուզբեկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկա | 449·910 |
| Տաջիկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկա | 223·543 |
| Ղազախական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկա | 583·868 |
| Կիրգիզական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկա | 168·972 |
| Կարելո-Ֆիննական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկա | 24·045 |
| Ընդամենը՝ | 11·055·398 |

5. 1944 թվի համար ընդհանուր միութենական պետական հարկերից և եկամուտներից հատկացումները ռեսպուբլիկական և տեղական բյուջեներին սահմանել հետևյալ չափով.

ա) Բնակչությունից գանձվող եկամտահարկի հասույթներից ՌՍՖՍՌ-ի, Ուկրաինական ՍՍՌ-ի, Բելոռուսական ՍՍՌ-ի, Ադրբեջանական ՍՍՌ-ի, Վրացական ՍՍՌ-ի, Թուրքմենական ՍՍՌ-ի, Ուզբեկական ՍՍՌ-ի, Ղազախական ՍՍՌ-ի, Կիրգիզական ՍՍՌ-ի բյուջեներին 10 տոկոս և Հայկական ՍՍՌ-ի, Տաջիկական

| | Եկամուտ-ների գծով (հազ. ռ.) | Ծախսերի գծով (հազ. ռ.) |
|---|---|---|
| Որից՝ ռեսպուբլիկական բյուջե | 372·961 | 208·989 |
| տեղական բյուջեներ | 114·666 | 283·638 |
| Կարելո-Ֆիննական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկա | 123·567 | 123·567 |
| Որից՝ ռեսպուբլիկական բյուջե | 112·033 | 87·988 |
| տեղական բյուջեներ | 11·534· | 35·579 |
| Միութենական Ռեսպուբլիկաների Պետական բյուջեների գծով ԸՆԴԱՄԵՆԸ | 36·175·146· | 36·175·146 |
| Որից՝ ռեսպուբլիկական բյուջեներ | 22·159·801 | 11·104·403 |
| տեղական բյուջեներ | 14·015·345 | 25·070·743 |

4․ Հաստատել ռեսպուբլիկական բյուջեների հատկացումները ԱՍՍՌ-ների և տեղական սովետների բյուջեներին հետևյալ գումարներով․

| | (հազար ռուբ.) |
|---|---|
| Ռուսաստանի Սովետական Ֆեդերատիվ Սոցիալիստական Ռեսպուբլիկա | 6·770·486 |
| Ուկրաինական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկա | 1·501·492 |
| Բելոռուսական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկա | 223·427 |
| Ադրբեջանական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկա | 361·068 |



| | (հազ. ռ.) |
|---|---|
| Վրացական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկա | 402·708 |
| Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկա | 191·006 |
| Թուրքմենական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկա | 154·878 |
| Ուզբեկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկա | 449·910 |
| Տաջիկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկա | 223·543 |
| Ղազախական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկա | 583·868 |
| Կիրգիզական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկա | 168·972 |
| Կարելո-Ֆիննական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկա | 24·045 |
| Ընդամենը՝ | 11·055·398 |

5․ 1944 թվի համար ընդհանուր միութենական պետական հարկերից և եկամուտներից հատկացումները ռեսպուբլիկական և տեղական բյուջեներին սահմանել հետևյալ չափով․

ա) Բնակչությունից գանձվող եկամտահարկի հասույթներից ՌՍՖՍՌ-ի, Ուկրաինական ՍՍՌ-ի, Բելոռուսական ՍՍՌ-ի, Ադրբեջանական ՍՍՌ-ի, Վրացական ՍՍՌ-ի, Թուրքմենական ՍՍՌ-ի, Ուզբեկական ՍՍՌ-ի, Ղազախական ՍՍՌ-ի, Կիրգիզական ՍՍՌ-ի բյուջեներին 10 տոկոս և Հայկական ՍՍՌ-ի, Տաջիկական

ՍՍՌ-ի, Կարելո-Ֆիննական ՍՍՌ-ի բյուջեներին 100 տոկոս:

բ) Կոլխոզների եկամտահարկի և կոլխոզնիկների ու միանձնատնտեսների գյուղատնտեսական հարկի հասույթներից՝ 25 տոկոս:

գ) Ուսումնական հարկի հասույթներից՝ 5 տոկոս:

դ) Մեքենա-տրակտորային կայանների եկամտահարկերից միութենական բոլոր ռեսպուբլիկաների բյուջեներին, բացի Ուզբեկական ՍՍՌ-ից՝ 25 տոկոս և Ուզբեկական ՍՍՌ-ի բյուջեին՝ 10 տոկոս:

ե) Բնակչության և կոլխոզների մեջ իրացված պետական փոխառության գումարից՝ 15 տոկոս:

6. Հանձնարարել ՍՍՌ Միության Ժողովրդական Կոմիսարների Սովետին, համապատասխանաբար շրջանառության հարկից Միութենական Ռեսպուբլիկաներին տրվելիք հատկացումների գումարների, որոնք հաստատված են ՍՍՌՄ Գերագույն Սովետի կողմից, միութենական յուրաքանչյուր ռեսպուբլիկայի համար սահմանել այդ հարկի հատկացումների տոկոսները:

7. Հանձնարարել ՍՍՌ Միության Ժողովրդական Կոմիսարների Սովետին քննարկել Մոլդավական ՍՍՌ-ի, Լիտովական ՍՍՌ-ի, Լատվիական ՍՍՌ-ի և Էստոնական ՍՍՌ-ի 1944 թվի բյուջեները:



8. Հաստատել ՍՍՌՄ-ի Պետական Բյուջեի կատարման հաշվետվությունները՝ 1940 թվի համար եկամուտների գծով 180.241.347 հազար ռուբլի և ծախսերի գծով 174.350.150 հազար ռուբլի, ծախսերի նկատմամբ եկամուտների գերազանցումով 5.891.197 հազար ռուբլի գումարով, 1941 թվի համար եկամուտների ու ծախսերի գծով 191.398.065 հազար ռուբլի գումարով և 1942 թվի համար եկամուտների ու ծախսերի գծով 182.841.484 հազար ռուբլի գումարով:

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Նախագահ՝ Մ. ԿԱԼԻՆԻՆ

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Քարտուղար՝ Ա. ԳՈՐԿԻՆ

Մոսկվա, Կրեմլ, 1 փետրվարի 1944 թ.

## ՍՍՌՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՆԱԽԱԳԱՀԻ ԱՌԱՋԻՆ ՏԵՂԱԿԱԼԻ ՄԱՍԻՆ

Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Գերագույն Սովետը որոշում է.

*Ընկ. Նիկոլայ Միխայլովիչ Շվերնիկին ընտրել ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Նախագահի առաջին տեղակալ:*

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Նախագահ՝ Մ. ԿԱԼԻՆԻՆ

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության քարտուղար՝ Ա. ԳՈՐԿԻՆ

*Մոսկվա, Կրեմլ,* 1 *փետրվարի* 1944 *թ.*

---

# ՍՍՌՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ 10-ՐԴ ՍԵՍԻԱՅԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԻ ԵՎ ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ 1944 ԹՎԻ ԽՆԴԻՐՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի քարտուղար ընկեր Գ. Ա. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ զեկուցումից՝ տված Երևան քաղաքի պարտիական ակտիվի ժողովում 1944 թ. փետրվարի 19-ին

*Փետրվարի 1-ին իր աշխատանքն ավարտեց ՍՍՌՄ Գերագույն Սովետի 10-րդ սեսիան, որը քննարկեց և լուծեց Սովետական Միության զարգացման գործում մեծ նշանակություն ունեցող մի շարք կարևոր հարցեր:*

*Այդ որոշումները է՛լ ավելի մեծ նշանակություն են ստանում գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ մղվող Հայրենական պատերազմի պայմաններում:*

*Ահա արդեն երրորդ տարին է, որ Սովետական Միությունը իր անկախության համար մենակ տիտանական պայքար է մղում Եվրոպայի ռեակցիոն ուժերի դեմ:*

*Սովետական ժողովուրդն իր Կարմիր*

ժողովրդական տնտեսության ֆինանսավորմանը, ավելի քան 51 միլիարդ ռուբլի՝ սոցիալ-կուլտուրական նպատակների և մոտ 16 միլիարդ ռուբլի՝ գերմանական զավթիչներից ազատագրված շրջանների տնտեսության վերականգնմանը:

Սովետական Ռեսպուբլիկաների Միության բյուջեի այդ հատկացումները լիովին համապատասխանում են սովետական ժողովուրդների հայրենասիրական խղձերին՝ էլ ավելի ամրապնդել մեր հայրենիքի տնտեսական և ռազմական հզորությունը:

Ընդհանուր միութենական բյուջեն հաստատելու հետ միաժամանակ քննվեցին ու հաստատվեցին միութենական ռեսպուբլիկաների բյուջեները:

Հայկական ՍՍՌ բյուջեն հաստատվեց 536 միլիոն ռուբլի գումարով, որը կազմում է 1943 թվի բյուջեի 132 տոկոսը:

Ընթացիկ տարում հիմնական ճյուղերի գծով կատարվում են հետևյալ հատկացումները.

Ժողովրդական տնտեսությանը՝

85 միլիոն ռուբլի, 1943 թվի 37 միլիոն ռուբլու դիմաց:

Սոցիալ-կուլտուրական կարիքներին՝

385 միլիոն ռուբլի, 1943 թվի 293 միլիոն ռուբլու դիմաց:



Կապիտալ ներդրումներին՝

80 միլիոն ռուբլի, 1943 թվի 44 միլիոն ռուբլու դիմաց:

Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության հատկացումների մեջ չեն մտնում այն միջոցները, որոնք հատկացվում են միութենական ձեռնարկություններին: Դրանք ֆինանսավորվում են Միության բյուջեով:

1944 թվի բյուջեն լիովին բավարարում է մեր ռեսպուբլիկայի այսօրվա կարիքները: Այդ հատկացումները բավարար չափով ապահովում են ինչպես արդյունաբերության և գյուղատնտեսության հետագա զարգացումը, այնպես էլ բնակչության կուլտուր-կենցաղային սպասարկումը բարելավելու գործը:

Պարտիական, սովետական, տնտեսական և մյուս բոլոր կազմակերպությունների խնդիրն է՝ ապահովել այդ հատկացումների ժամանակին իրացումը:

ՍՍՌՄ Գերագույն Սովետի 10-րդ սեսիան քննարկեց նաև երկու կարևոր հարց, որոնք պատմական նշանակություն ունեն միութենական ռեսպուբլիկաների և Սովետական ամբողջ Միության զարգացման գործում: Դա միութենական ռեսպուբլիկաներին զորային կազմավորումներ ստեղծելու և այդ կապակցությամբ Պաշտպանության Ժողովրդական Կոմիսարիատը ընդհանուր

թյան փայլուն կիրառումը նոր պայմաններում, Սովետական Միության հզորության աճման և Միութենական ռեսպուբլիկաների ազգային զարգացման պայմաններում:

Սովետական Միության ժողովուրդները այդ ակտի մեջ տեսնում են մեր պարտիայի ազգային քաղաքականության հանճարեղ կերտողի՝ մեծ Ստալինի գաղափարների իրագործումը: Դրա համար էլ աշխատավորները Գերագույն Սովետի 10-րդ սեսիայի արդյունքներին նվիրված միտինգներում այնպիսի ոգևորությամբ միահամուռ կերպով հավանություն տվին սեսիայի ընդունած պատմական որոշումներին:

Անցնելով ընթացիկ տարում պարտիական և սովետական կազմակերպությունների առաջ կանգնած պրակտիկ խնդիրներին, որոնք բխում են թշնամուն վերջնականապես ջախջախելու և պատերազմի հաղթական ավարտման մասին ընկեր Ստալինի տված ցուցումներից, ընկ. Հարությունյանը կանգ է առնում արդյունաբերության և գյուղատնտեսության ասպարեզում 1943 թվի աշխատանքի արդյունքների վրա:

Անհրաժեշտ է նշել,— ասում է ընկ. Հարությունյանը,— որ Հայաստանի արդյունաբերական ձեռնարկությունները պատերազմի ժամանակ ամբողջությամբ վերցրած աշխատել են լավ և պատերազմական ժա-



մանակի դժվարին պայմաններում հաջողությամբ կատարել են ռազմական պատվերները:

1943 թվին ռեսպուբլիկական արդյունաբերության ձեռնարկությունները արտադրական պլանները կատարեցին 102,5 տոկոսով: Առանձնապես լավ աշխատեցին Տեղական Արդյունաբերության ժողկոմատի ձեռնարկությունները, որոնք արտադրական պլանը կատարեցին 111 տոկոսով, Տեքստիլ արդյունաբերության ձեռնարկությունները, որոնք պլանը կատարեցին 105,2 տոկոսով, Սննդարդյունաբերության ժողկոմատի ձեռնարկությունները, որոնք պլանը կատարեցին 104 տոկոսով, Անտառժողկոմատի ձեռնարկությունները և մյուսները:

Միաժամանակ ընկ. Հարությունյանը քննադատության ենթարկեց Թեթև արդյունաբերության մի շարք ձեռնարկությունների (Երևանի Կոշիկի գործարանի, Կաշեգործարանի, Խրոմպիկի գործարանի, Լենինականի Կոշիկի գործարանի և այլն) և Մսեղեն-Կաթնեղենի արդյունաբերության ժողկոմատի սիստեմի ձեռնարկությունների, մասնավորապես Հայպանիրտրեստի ձեռնարկությունների վատ աշխատանքը, որոնք 1943 թվի պլանը կատարել են միայն 80 տոկոսով:

Պլանը չկատարող Միութենական են-

թարկման ձեռնարկություններից ընկ. Հարությունյանը մանրամասն կանգ է առնում Կիրովի անվան գործարանի աշխատանքի վրա, որը չի կարողացել կարգավորել արտադրությունը, չնայած բոլոր անհրաժեշտ պայմանների առկայությանը:

Մանրամասն վերլուծելով այդ ձեռնարկությունների ետ մնալու պատճառները, ընկ. Հարությունյանը նշում է, որ գլխավոր պատճառներն են աշխատանքային և արտադրական կարգապահության ցածր մակարդակը, աշխատանքի արտադրողականության բարձրացման, պրոֆեսիաների համատեղման շարժումը ծավալելու և ռացիոնալիզատորական առաջարկությունները կենսագործելու համար մղվող անբավարար պայքարը:

Այդ բանն առանձնապես տեղի ունի Թեթև և Տեղական արդյունաբերության մի քանի ձեռնարկություններում (Կաբելի 1-ին գործարան, Երևանի Կոշիկի գործարան, Լենինականի Մոլոտովի անվան Մանվածքային գործարան, Լենինականի Տեղական կոմբինատ):

Այստեղից էլ բխում են այն խնդիրները, որոնք 1944 թվին կանգնած են պարտիական-կոմերիտական, պրոֆմիութենական և տնտեսական կազմակերպությունների առաջ, այսինքն՝ ա) աշխատանքային կար-



գապահության ամեն կերպ ամրապնդումը ձեռնարկություններում և աշխատանքի արտադրողականության հետագա բարձրացումը. այս խնդիրը կանգնած է բոլոր ձեռնարկությունների առաջ: բ) Ռացիոնալիզատորական աշխատանքի և պրոֆեսիաների համատեղման լայն ծավալումը: գ) Նյութերի, հումքի, էլեկտրէներգիայի, ածուխի և վառելանյութի մյուս տեսակների ծախսման մեջ խնայողության ռեժիմի խիստ պահպանումը:

Բոլոր կազմակերպություններից ուժեղացված ուշադրություն է պահանջում նոր գործարանների և ֆաբրիկաների շինարարությունը: Պատերազմի ժամանակ Հայաստանում չի դադարել, այլ ընդհակառակը ուժեղացել է նոր գործարանների շինարարությունը: Հայրենական պատերազմի ժամանակ մենք ավարտել ենք մի շարք ձեռնարկությունների շինարարությունն ու շահագործման ենք հանձնել դրանք:

Շինարարության պրոցեսում են գտնվում մի ամբողջ շարք նոր, կարևոր արդյունաբերական ձեռնարկություններ:

Նախատեսվում է մի շարք խոշոր գործարանների և ֆաբրիկաների շինարարությունը 1944 թվին:

Ավարտելով իր զեկուցման այդ մասը, ընկ. Հարությունյանը ասում է. պատե-

րազմի ժամանակ Հայաստանի ինդուստրացումը ընթացել է հարաճուն տեմպով և շինարարության այսպիսի մեծ ծավալը կարող է հաջողությամբ և ժամկետին կատարվել պարտիական, սովետական բոլոր կազմակերպությունների եռանդուն աշխատանքի և մեր կոլխոզնիկների ակտիվ մասնակցության պայմաններում:

Այնուհետև ընկ. Հարությունյանը մանրամասն կանգ է առնում գյուղատնտեսության ասպարեզում կատարված աշխատանքի արդյունքների և առաջիկա խնդիրների վրա: Հայաստանի կոլխոզները պատերազմի ժամանակ հաղթահարելով մի ամբողջ շարք դժվարություններ, լուրջ հաջողություններ են ձեռք բերել ցանքատարածությունների ընդարձակման, բերքատվության բարձրացման և անասունների գլխաքանակի ավելացման գործում: Այդ հաջողությունները համառոտակի արտահայտվում են հետևյալ կերպ.

Հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունը 1943 թվին 1940 թվի համեմատությամբ, ավելացել է 8,8 տոկոսով: Համապատասխանորեն ավելացել է կարտոֆիլի ցանքատարածությունը՝ 38 տոկոսով, բանջարա-բոստանային կուլտուրաներինը՝ 29 տոկոսով, տեխնիկական կուլտուրաներինը՝ 3,4 տոկոսով, այդ թվում ծխա-



խոտինը՝ 50 տոկոսով, շաքարի ճակնդեղինը՝ 100 տոկոսով: 1943 թվին հացահատիկային կուլտուրաների միջին բերքատվությունը հեկտարից 1940 թվի համեմատությամբ, ավելացել է մեկ ցենտներով, կարտոֆիլինը՝ 29 ցենտներով, բանջարա-բոստանային կուլտուրաներինը՝ 36 ցենտներով:

Լավ ցուցանիշներ ունեն խաղողագործությունը և այգեգործությունը: «Հայկական ՍՍՌ-ում պտղատու—խաղողի այգիների ու տեխնիկական կուլտուրաների զարգացման միջոցառումների մասին» ՍՍՌՄ Ժողկոմսովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի 1940 թվի սեպտեմբերի 6-ի որոշումից հետո, Հայաստանի կոլխոզներում տնկվել է 3·485 հեկտար խաղողի նոր այգի և 5·119 հեկտար պտղատու այգի: Այսպիսով, 1943 թվին խաղողի այգիների տարածությունը հասավ 21·993 հեկտարի և պտղատու այգիներինը՝ 24·611 հեկտարի:

Վերջին տարիների ընթացքում զգալի աշխատանք է կատարվել խաղողագործությունը նախալեռնային, իսկ պտղաբուծությունը լեռնային շրջաններում զարգացնելու ուղղությամբ:

Բազմամյա տունկերի տարածությունը ընդարձակելու հետ միասին, մենք ունենք նաև բերքատվության աճ:

Վերջին տարիներին զգալի ուշադրություն է նվիրվել չերամապահության կերի բազայի ընդլայնման հարցին, նկատի ունենալով չերամապահության զարգացման համար բարենպաստ պայմանների առկայությունը Հայաստանում:

1941—1943 թ. թ. ժամանակամիջոցում պատրաստվել է 450 հեկտար թթի պլանտացիա և տնկվել է 949 հազար հատ թթենի:

1944 թվի հունվարի 1-ին ռեսպուբլիկայում կար 1.192 հեկտար թթենու տունկ: Բացի դրանից, առանձին տնկված թթենիների թիվը հասել է 2 միլիոն 247 հազարի:

Գրենայի մեկ տուփից ստացվող բոժոժի քանակով Հայաստանը պատերազմի տարիներին շարունակում է առաջին տեղը գրավել Միության մեջ:

Հայաստանի պայմաններում ցանքատարածությունների, մասնավորապես տեխնիկական և բարձրորակ կուլտուրաների ցանքատարածությունների ընդարձակման և բերքատվության բարձրացման գործի կարևորագույն փակտորներից մեկը հողերի արհեստական ոռոգումն է:

Ոռոգման սիստեմի վերակառուցման աշխատանքի, ինչպես նաև իրիգացիոն նոր շինարարության հետևանքով ոռոգելի տարածությունը 1944 թվի հունվարի 1-ին



հասցվեց 198,8 հազար հեկտարի, որը կազմում է բոլոր վարելահողերի 30 տոկոսը:

Ոռոգելի ֆոնդի այդպիսի ավելացումը զգալի փոփոխություն մտցրեց գյուղատնտեսական կուլտուրաների կազմի մեջ և հնարավորություն տվեց տեխնիկական և արժեքավոր կուլտուրաների ցանքատարածությունները ընդարձակելու Հայաստանի ինչպես հարթավայրերում, այնպես էլ նախալեռնային շրջաններում:

Ներկայումս աշխատանքներ են կատարվում Ուզունլարի, Գառնու, Աղխամանի, Նորքի ջրանցքների շինարարության վրա: Այդ ջրանցքներով 1944 թվի ոռոգման սեզոնում ջուր բաց կթողնվի:

Գրեթե ավարտված են Ղամարլուի կոլեկտորի երկարացման աշխատանքները և աշխատանքներ են կատարվում Ստալինի անվան ջրանցքի ջուրն ավելացնելու ուղղությամբ:

1943 թվի աշնանից սկսվեցին ստորին Զանգվի և Թալինի ջրանցքների գլխամասի շինարարության աշխատանքները:

Վերջին երկու տարվա ընթացքում կոլխոզների ուժերով ու միջոցներով զգալի աշխատանքներ են կատարվել ոռոգման փոքր ջրանցքների շինարարության ուղղությամբ, որոնք ոռոգելի տարածությունը

ընդարձակել են ավելի քան 1·800 հեկտարով։

Բացի կառուցվող ջրանցքներից, նախատեսված է իրականացնել Կոտայքի շրջանի հողերի ոռոգումը, ավարտել Ճախմինյա Արփաչայի, Լամբալուի և Դվինի ջրանցքների նախագծման և հետազոտության աշխատանքները։

Այդ աշխատանքների ավարտումը կապահովի ՍՍՌՄ Ժողկոմսովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի որոշմամբ նախատեսված 54 հազար հեկտար ոռոգելի նոր հողերի օգտագործումը։

Նշանակալից են անասնաբուծության ասպարեզում ձեռք բերված հաջողությունները։

Հանրային անասնաբուծության գլխաքանակը 1944 թվի հունվարին, 1940 թվի համեմատությամբ ավելացել է անասունների բոլոր տեսակների գծով (բացառությամբ ձիերի), այդ թվում ոչխարների և այծերի գծով 23,6 տոկոսով, խոշոր եղջերավոր անասունների գծով 6,2 տոկոսով, խոզերի գծով 10 տոկոսով և թռչունների գծով 15 տոկոսով։

Անասունների բոլոր տեսակները և հատկապես մատղաշի պահպանումը ու խնամքը բարելավելու խնդիրը կանգնած է մեր առաջ որպես կարևորագույն հարց։



Միաժամանակ լիկվիդացնելով ստերջությունը և մատղաշի անկումը, կարելի է հասնել հոտի նորմալ վերարտադրության՝ սեփական աճի հաշվին։

Հետագա կարևորագույն խնդիրը անասնաբուծության մթերատվության բարձրացումն է, որ դեռևս գտնվում է ցածր մակարդակի վրա, թեև պետությանը անասնապահական մթերքներ հանձնելու պլանները կատարվում են լրիվ։

Իր աշխատանքը զգալի չափով բարելավել է տրակտորային պարկը։

1943 թվին մեքենատրակտորային կայանները տրակտորային աշխատանքների պլանը կատարեցին 93 տոկոսով, 1940 թվի 85,8 տոկոսի դիմաց։

1943 թվին 15 ուժանոց մեկ տրակտորի միջին արտադրանքը կազմել է 213 հեկտար, մոտենալով պլանային նորմաներին։

1943 թվին ՄՏ կայանները հաջողությամբ դուրս բերեցին կոմբայնային բերքահավաքը, պլանը կատարելով 102 տոկոսով։

1943 թվին կոմբայնի միջին արտադրանքը կազմեց 135 հեկտար, պլանային 125 հեկտարի դիմաց։

Տրակտորային պարկի նախապատրաստումը 1944 թվի գարնանային աշխատանքներին ընթանում է հաջող։ Տրակտորների նո-

րոգման 1943 թվի չորրորդ եռամսյակի պլանը 1944 թվի հունվարի 1-ին հիմնական և ընթացիկ նորոգման գծով կատարված էր 107 տոկոսով: Գերակատարված է նաև տրակտորների նորոգման հունվար ամսվա պլանը:

Պահեստի մասերի պատրաստման և վերականգնման պլանը ՄՏ կայանների արհեստանոցների կողմից կատարված է 549 հազար ռուբլու գումարով, պլանով նախատեսված 410 հազար ռուբլու դիմաց:

Պատերազմի ժամանակամիջոցում շարունակվել է կոլխոզների կազմակերպչական-տնտեսական հետագա ամրապնդումը:

Պատերազմի ժամանակաշրջանում պարտկազմակերպությունների կողմից բնակչության մեջ կատարված քաղաքական ու բացատրական հաջող աշխատանքը շատ բանով արտացոլել է կոլխոզնիկների կողմից համաժողովրդական խնդիրների գիտակցման պրոցեսը և այդ կապակցությամբ անչափ աճել է կանանց ու դեռահասների ակտիվ մասնակցությունը կոլխոզների արտադրական աշխատանքում:

Հետևյալ տվյալները ցույց են տալիս կանանց և դեռահասների մեծ մասնակցությունը կոլխոզային արտադրության մեջ:

Եթե 1940 թվին 146 հազար աշխատունակ կանանցից կոլխոզային աշխատանքին



մասնակցում էին 133 հազար կին, ապա 1942 թվին՝ 150 հազար աշխատունակ կանանցից մասնակցում էին 147 հազարը, իսկ 1943 թվին՝ կանանց մասնակցությունը կոլխոզային աշխատանքում էլ ավելի շատ է:

Կոլխոզային ցանքատարածությունների ընդարձակումը, հացահատիկային կուլտուրաների, կարտոֆիլի և արժեքավոր կուլտուրաների կայուն բերքը պատերազմի ժամանակաշրջանում, ինչպես նաև կոլխոզային հոտի գլխաքանակի ավելացումը, տալիս է ընկ. Հարությունյանը, պատերազմի ժամանակամիջոցում կոլխոզները էլ ավելի են ամրապնդել տնտեսական և ֆինանսական տեսակետից:

Եթե 1940 թվին Հայաստանի կոլխոզները ստացան 218 միլիոն ռուբլի գումարով դրամական եկամուտ, ապա 1943 թվին կոլխոզների դրամական եկամուտը կազմեց 330 միլիոն ռուբլի: Դրամական մեծ եկամուտը պայմանավորեց կոլխոզների հանրային ֆոնդերի, մասնավորապես դրամական անբաժանելի ֆոնդերի ավելացումը:

1944 թվի հունվարի 1-ին կոլխոզների հաշիվներում Գյուղատնտեսական բանկում եղած գումարը 6 ու կես անգամ ավելի էր 1940 թվին բանկում եղած գումարից:

Պատերազմի ժամանակամիջոցում Հա-

յաստանի կոլխոզները և կոլխոզնիկները ավելի կազմակերպված ու կանոնավոր են կատարել գյուղատնտեսական մթերքներ հանձնելու ուղղությամբ պետության հանդեպ իրենց պարտավորությունները: 1943 թվին պետական մթերումների պլանները բոլոր հիմնական տեսակների գծով կատարվեցին ու գերակատարվեցին:

Պետական մթերումներից բացի, Հայաստանի մի ամբողջ շարք բերքատու շրջաններ 1943 թվին 123 հազար փութ հացահատիկ ու կարտոֆիլ հանձնեցին Պաշտպանության ֆոնդի և Գերագույն Գլխավոր Հրամանատարության ֆոնդի օգտին:

Վերջին տարիների ընթացքում կոլխոզների ամրապնդման և տնտեսապես ուժեղանալու արդյունքները երևան եկան ոչ միայն կոլխոզների և կոլխոզնիկների կողմից պետության հանդեպ իրենց պարտավորությունները ժամանակին և լրիվ կատարելու մեջ, այլև աշխօրերի դիմաց կոլխոզնիկներին տրվող գյուղատնտեսական մթերքների և դրամի ավելացման մեջ:

1943 թվին մեկ աշխօրին զգալի չափով ավելի շատ մթերք է հասել, քան նախորդ տարիներին:

Այսպիսով պատերազմի տարիներին Հայաստանի գյուղատնտեսությունը անընդհատ զարգացել է: Այս տարիներին ցանքա-



տարածությունը ոչ միայն պահպանվել է մինչպատերազմյան մակարդակով, այլև տեղի է ունեցել ինչպես հացահատիկային և բազմամյա տունկերի, այնպես էլ տեխնիկական կուլտուրաների տարածության ընդարձակում:

ՀամԿ(բ)Պ Կենտկոմը և Միության կառավարությունը բարձր գնահատական տվին պատերազմի ժամանակաշրջանում մեր ռեսպուբլիկայում գյուղատնտեսության ասպարեզում կատարված աշխատանքին:

Անձնազոհ աշխատանքի համար Միության կառավարությունը շքանշաններով ու մեդալներով պարգևատրեց առաջավոր կոլխոզնիկներին և կոլխոզնիկուհիներին ու գյուղատնտեսության մյուս աշխատողներին:

Միաժամանակ ՀամԿ(բ)Պ Կենտկոմը և ՍՍՌՄ Ժողկոմսովետը նոր միջոցառումներ նշեցին Հայաստանի գյուղատնտեսության հետագա զարգացման համար:

Կոլխոզների, պարտիական ու սովետական կազմակերպությունների խնդիրն է՝ լրիվ իրականացնել այդ միջոցառումները:

Տարակույս չկա, որ Հայաստանի կոլխոզնիկները ի պատասխան կոլխոզների աշխատանքի նկատմամբ մեր առաջնորդ ընկեր Ստալինի կողմից ցուցաբերվող այդպիսի ուշադրության և այն օգնության, որ

Համկ(բ)Պ Կենտկոմը և Միության կառավարությունը ցույց են տալիս Հայաստանի գյուղատնտեսության հետագա զարգացմանը, կոնկրետ եղանակով կպայքարեն Համկ(բ)Պ Կենտկոմի և Միության Ժողկոմսովետի դիրեկտիվների իրագործման համար և պատվով կատարելով առանց բացառության պետական բոլոր պարտավորությունները, կհասնեն նորանոր հաջողությունների մեր ռեսպուբլիկայի կոլխոզային տնտեսության հետագա բարգավաճման գործում:

Ամփոփելով զեկուցումը, ընկ. Հարությունյանը ասաց. Հայաստանի բոլշևիկները, որոնք ցույց են տվել արդյունաբերության, գյուղատնտեսության և կուլտուրայի կոնկրետորեն ստալինյան ձևով ղեկավարելու հմտություն, չեն հանգստանա ձեռք բերված հաջողություններով և ոգևորված իրենց Հայրենիքի հանդեպ, Համկ(բ)Պ Կենտկոմի հանդեպ, մեր սիրելի առաջնորդ ընկեր Ստալինի հանդեպ, պատասխանատվության էլ ավելի մեծ զգացումով, անձնազոհ աշխատանքի նորանոր



բոլշևիկյան օրինակներ ցույց կտան Սովետական մեծ պետության հզորության հետագա ամրապնդման համար:

(Ժողովի մասնակիցները երկար ժամանակ բուռն ծափահարում են ի պատիվ մեծ առաջնորդ, հանճարեղ զորավար ընկեր ՍՏԱԼԻՆԻ, որը մեզ տանում է հաղթանակից հաղթանակ):

---

Պատասխանատու խմբագիր՝
Զ. ԳՐԻԳՈՐՅԱՆ

